հաջակել տալով կցումը (ինչպէս ըրին Թուրքերը՝ Սանճաքին մէջ...)։ Այդ պարագային Լեհաստան պիտի հարկադրուի հրաժարիլ իր իրաւունքներէն եւ կամ արշաւել։ Այն ատեն Գերմանիա պիտի գանգատի թէ Լեհաստան յարձակում կատարած է եւ պիտի միջամտէ ։

## Խորհ. ռազմափորձ Պալթեան սահմաններուն վրայ

Խորհրդային ապայակոյտի պաշտօնական մէկ զեկոյցը կ՛ըսէ թէ կարմիր բանակի աշնանային ռազմափորձերը այս տարի տեղի պիտի ունենան Լէնինկրատի շրջանին մէջ, այսինքն՝ պալթեան պետութեանց սահմաններուն վրայ։

Ուրիշ տարիներ այս փորձերը կատարուած են աւելի հարաւային կողմը՝ լեհական սահմանի մօտ։ Այս անգամ պալթեան սահմանները ընտրած է ապայակոյտը քաղաքական նկատումներով, որովհետեւ այս շրջանը միակն է որ անգլօ-ֆրանսական երաշխիքի տակ չէ առնուած ցարդ։ Զեկոյցը կ՛ըսէ թէ ռազմափորձը զօրաշարժ չի նշանակեր ։

## Պաշարումը կը շարունակուի Թիէնցինի

Մինչ Թոքիոյի մէջ ճափոնական եւ անգլիական պատուիրակները կը բանակցին, Թիէնցինի մէջ զինուորական իշխանութիւնները խստացուցած են պաշարումը՝ անգլիական եւ ֆրանսական թաղամասերու մէջ։ Ոչ ոքի թոյլ կը տրուի այս թաղամասերը ելեւմուտ ընել։ Ուտելիքի խնդիրը շատ սուր հանգամանքստացած է։

Ճափոնի ներկայացուցիչը, պաշարումը խստացնելու առթիւ, հետեւեալ յայտարարութիւնը ըրաւ.— « Մեր վճռականութիւնը փոխուած չէ։ Դատն փորձերէ ետք եկած ենք այն եզրակացութեան թէ անգլիական դիւանագիտութիւնը խարդախ է։ Մենք կրնանք պաշարումը խստացնել, բայց թուլցնել՝ երբեք ։

Ճափոնական պաշարում սկսաւ նաեւ Ֆուչէուի եւ Ցէնչէուի նաւահանգիստներուն մէջ։

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԳԵՐՄԱՆԵՒԽՈՐՀՐԴԱՅԻՆ առեւտրական բանակցութիւնները կը շարունակուին Մոսկուայի մէջ։ Գերմանական դեսպանը լիազօրութիւն ստացաւ իր կառավարութենէն։ Այս առթիւ թերթերը նորէն կը գրեն թէ Գերմանիա տրամադիր է երկու միլիառ մարքի վարկ մը բանալու հինգ տարուան համար։ Խ. Միութիւնը ճարտարագործական արտադրութիւններ պիտի դնէ, իսկ Գերմանիա՝ նախանիւթեր ։

ԵՐՈՒՍԱՂԷՄԷՆ կը հեռագրեն թէ Թէլավիվի մօտ 11 Արաբներ սպաննուեցան եւ հինգ Արաբներ ծանրապէս վիրաւորուեցան Յունիս 29ին։ Տեղին զինուորական հրամանատարը արգիլեց երթեւեկը դէպի Թէլ Ավիվ։ Ուրբաթ օր ալ ռումբ մը պայթեցաւ Երուսաղէմի կեդրոնին մէջ, վիրաւորելով 15 Արաբներ։ Կը կարծուի թէ դաւադիրները մոլեռանդ Հրեաներ են։

ՌՈՒՄԱՆԻՈՅ պատրիարք ընտրուեցաւ Մոլտավիոյ առաջնորդը, Նիկոդիմոս արք. յաջորդելով Քրիսթէա պատրիարք – վարչապետին, որ մեռաւ քանի մէջ։ Նոր պատրիարքը 73 տարեկան է եւ հեղինակ շարք մը աստուածաբանական գիրքերու ։

ՀԻՆԳ ԻՐԼԱՆՏԱՑԻ ԱՀԱԲԵԿԻՉՆԵՐ 20ական տարի բանտարկութեան դատապարտուեցան Լոնտոնի մէջ, իբրեւ մեղսակից վերջերս պատահած պայթումներու։ Ամբաստանեալներէն մէկը, որ անցեալ տարի Տըպլին գացած էր ռումբերու գործածութեան դաս առնելու համար, բացագանչեց, վճիռը լսելէ վերջը.— «Քրիստոնէական պարտականութիւն է կռուիլ բռնակալութեան դէմ եւ ծառայել իր հայրենիքին »։

ՊԵԼԺԻՈՅ ՄԷՋ երեւան հանուած լրտեսական գործը աւելի ծանր հանգամանք ունի քան կ՛ենթադրուէր։ Ամբաստանեալներէն տեղակալ Տոմպրէ խոստովանեցաւ եղած մեղադրանքներուն մէկ մասը, ընդունելով թէ 1937էն ի վեր զինուորական գաղտնի փաստաթուղթեր ճարած է գերմանական գործակալին, փոխան մեծ գումարներու։ Տեղակալին սիրուհին կարգ մը յայտնութիւններ ըրած էր, այնպէս որ ամբաստանեալը այլեւս չկրցաւ ուրանալ։ Թերթերը կը գրեն թէ ոչ միայն լրտեսութիւն կատարուած էր, այլ եւ դաւ մը սարքուած՝ պետութեան ապահովութեան դէմ։ Զօրաշարժի պարագային, դաւադիրները ըմբոստութիւն պիտի յարուցանէին պահեստի բանակին մէջ։— Երեսփ. ժողովը քուէարկեց կառավարութեան առաջարկած օրինագիծը, որ ծանր պատիժներ կը սահմանէ օտար քարոզութեանց դէմ ։

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ կառավարութիւնը նոր օրինագիծ մը քուէարկեց, որով կ՛երկարաձգուի նախագահ Ռուզվէլթի լիազօրութիւնը տոլարին գինը արժեզրկելու եւ արծաթ գնելու մասին։ Նախապէս մերժուած էր այս երկարաձգումը, բայց միջին բանաձեւ մը գտնուեցաւ ։

ՕԴԱՆԱՒԱՅԻՆ կռիւները կը շարունակուին Մոնկոլիոյ եւ Մանչուրիոյ սահմանագլուխին վրայ։ Ճափոնական աղբիւրէ կը հաղորդեն թէ խորհրդային օդանաւերը հեղձուցիչ կազեր արձակած են։ Զեկոյցը կ՛աւելցնէ թէ մայիս 20–էն 27 յունիս 560 խորհրդային օդանաւեր մասնակցած են կռիւներուն, իր 253ը վար ձգուած են, իսկ 38ը խորտակուած՝ կայաններու մէջ, եւ թէ Ճափոնցիները միայն 9 օդանաւ կորսնցուցած են։

ՓՕԼԱ ՆԷԿՐԻ, շարժանկարի աշխարհահռչակ դերասանուհին, դատ բացաւ ֆրանսական շաբաթաթերթի մը դէմ, մէկ միլիոն ֆրանք հատուցում պահանջելով։ Թերթը գրած էր թէ Փօլա Նէկրի մաս կը կազմէր Հիթլէրի մտերիմ շրջանակին եւ վերջերս կեդրոնացման բանակատեղի մը փոխադրուեցաւ ։

ՍՊԱՆԻՈՅ մէջ գործող իտալական կամաւորներու վերջին կարաւանը՝ 5000 հոգի, հասած է Իտալիա։ Կոմս Չիանօ, Իտալիոյ արտաքին նախարարը, Սպանիա պիտի երթայ յուլիս 10ին, տեսակցելու համար Զօր. Ֆրանքոյի հետ։

ՆԻՒ ԵՈՐՔԷՆ Փարիզ հասաւ, 48 ժամէն, ամերիկեան օդանաւ մը, «Տիքսի Քլիփըր», 18 ճամբորդներով։ Ուղեւորներէն մէկը 675 տոլար վճարած էր 1931ին 125,600 ֆրանք), եւ հազիւ Փարիզ հասած, Նիւ Եորք կանչուեցաւ անխողղաբար ։

ՅՈՒԼԻՍ 14Ի ՏՕՆԻՆ այս տարի պիտի մասնակցին անգլիացի զինուորներ ալ, յեղափոխութեան 150ամեակին առթիւ։ Շան զ՛Էլիզէի պողոտան եւ Էթուալի հրապարակը պիտի զարդարուին նաեւ անգլիական դրօշներով։ Զօրահանդէսին պիտի մասնակցին 10,000 զինուորներ, օտար ռազմիկներու հետ։

ԱՐՏԱՔՍՈՒՄԻ դատապարտուեցաւ գերմանական քարոզութեանց գործակալ մը, հաստատուած ըլլալով թէ Ֆրանսայի շահերուն դէմ կը գործէր քանի մը շաբաթէ ի վեր ։









## Ամենուն ուշադրութեան

ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ Միութեան Փարիզի Մասնաճիւղի կողմէ կազմակերպուած մշակոյթի տարեկան վիճակախաղը հանդիսաւորապէս տեղի պիտի ունենայ յառաջիկայ 8 Յուլիս, Շաբաթ կէսօրէ վերջ ժամը 4ին, Բարեգործականի Տան մէջ, 8 Ռիւ Պոսիւէ (մեթրօ Փուասոնիէռ) հաճելի ժամանցով։ Հիւրամեծարութիւն տեղի պիտի ունենայ։ Մուտքը ազատ է։







## Կ'ուզուին գործաւորներ եւ գործաւորուհիներ

Ստանձնած ենք ֆրանսական բանակի զինուորներու համար համազգեստներ կարելու գործը։ Տեւական աշխատանք, լաւ վճարում։ Մանրամասնութեանց համար դիմել՝ ամէն օր, հայ մարտիկներու միութեան գրասենեակը, 9, rue Thénard, Paris (5), մեթրօ Սէն Միշէլ։



















**Le Gerant : H. STEPHAN**

**Imprimerie A-DER (AGOPIAN)**

**17, Rue Damesme .. Paris (13)**

ծակցէն՝ Հէր Ալէցէ, թէ Ֆրանսա երբեք ալ պատերազմի պիտի չմտնէ Տան-ցիկի համար եւ այս պարագան տեղեկացուցած է Հիթլէրին, մինչ իրողութիւ-նը այն է որ Ֆրանսա պիտի յարգէ, Անգլիոյ հետ միասին, իր յանձնառու-թիւնը Լեհաստանի հանդէպ: Այս այն Ալէցն է, որ անցեալ շաբաթ Փա-րիզ կը գտնուէր, եւ որ յանկարծ մեկնեցաւ Պերլին, որովհետեւ ֆրանսական կառավարութիւնը յայտնած էր իրեն, թէ բաղձալի չէ իր ներկայութիւնը Փարիզի մէջ: Միւս կողմէ՝ Ֆոն Ռիպպէնթրոփ ըսած է Հիթլէրի, թէ Անգլիա եւս պիտի չպատերազմի Տանցիկի համար, եւ իր այս կարծիքը հիմնած է այն տեսութեան վրայ, թէ Լոնտոնի վերջին ծանուցագրին մէջ Մեծն Բրիտանիա բանակցելու բաղձանք կը յայտնէ Գերմանիոյ հետ:

Այժմ, քաղաքական շրջանակները կը հաւաստեն թէ Հիթլէր ծանօթացած է վարչապետ Տալատիէի եւ արտաքին նախարար Հըլիֆաքսի ճառերու ամբող-ջական պատճէններուն, թէեւ Առաջնորդը անգլերէն ու ֆրանսերէն չի գի-տեր: Հիթլէր գիտէ որոշապէս, թէ Անգլիա եւ Ֆրանսա տեղեկացուցած են լեհական կառավարութեան, թէ պիտի աջակցին ու կատարեն իրեն յանձնա-ռութիւնները, եթէ Լեհաստան վտանգուած զգայ իր կենսական շահերը, Տան-ցիկի վէճին առիթով: Միւս կողմէ Ֆրանսայի արտաքին նախարարը իր մօտ հրաւիրելով գերմանական դեսպանը, բացորոշապէս պարզած է Ֆրանսայի դիրքը:

Վարշաւայէն հասած լուրերէն կ'երեւայ, որ գնդ. Պէք ամենայն համբե-րատարութեամբ կը հետեւի դէպքերուն եւ ո եւ է քայլ պիտի չառնէ որ կա-ցութիւնը բարդացնէ, բայց թոյլ պիտի չտայ որ Գերմանները ներսէն կամ դուրսէն, խանգարեն Տանցիկի իրաւական վիճակը:

Լորտ Հըլիֆաքս երկար տեսակցութիւն մը ունեցաւ Վարշաւայի անգլիական դեսպանին հետ, որ Լոնտոն եկած էր, զեկուցանելու համար կացութեան մա-սին: Կ'ըսուի թէ քանի մը օրէն Լոնտոն պիտի գայ նաեւ Պերլինի անգլիական դեսպանը, անձամբ տեղեկութիւններ հաղորդելու համար Գերմանիոյ մէջ տիրող տրամադրութիւններու մասին:

## ՍՈՒՐԻՈՅ ՎԱՐՉԱԿԱՆ ՎԵՐԱԿԱԶՄՈՒԹԻՒՆԸ

Երէկ հաղորդեր էինք Սուրիոյ մարզպանին հրամանագիրը, որով երեք ինքնավար շրջաններու կը վերածուին Ալէվիներու երկիրը, Ճէպէլ Տրիւզ եւ Ճէզիրէ: Առաջին երկուքը պիտի ունենան իրենց առանձին վարիչները եւ շր-ջանային խորհուրդները, վայելելով ելմտական եւ դատական ինքնավարու-թիւն: Իսկ Ճէզիրէի շրջանը առ այժմ պիտի կառավարուի մարզպանի փոխ-պատուիրակին կողմէ, որ կրնայ սուրիացի օգնական մը նշանակել:

Դամասկոսի առժամեայ կառավարութիւնը այժմ կը քննէ այս հրամանա-գիրը: Բուն կացութիւնը պիտի պարզուի նոր դահլիճին կազմութենէն վերջը: Սուրիոյ ազգայնականները կը շարունակեն իրենց պայքարը, կատարեալ ան-կախութիւն պահանջելով, համաձայն 1936ի դաշնագրին:

### Իտալիոյ տրամադրութիւնները

Իտալական մամուլը կը գանգատի, թէ Լոնտոնի եւ Փարիզի մէջ կը տիրէ «խուճապ եւ ջղայնութիւն» եւ թէ «պատերազմի հոգեբանութիւնը» կը ծա-ւալի, մինչ Առանցքի պետութեանց մէջ կը տիրէ լուրջ հանդարտութիւն:

Կիրակի օր Հռոմի պատերուն վրայ փակցուցին մեծատառ յայտարա-րութիւններ, որոնցմով ժողովուրդը կը հրաւիրուի գնել կազմրգել դիմակ-ներ: Շատ մը թերթեր այս առթիւ կ'ըսեն, թէ «ժողովրդապետութիւնները ռազմատենչ են ու պատերազմ կը բաղձան», թէեւ մամուլի մեծագոյն մասին յանկերգը այն է, թէ Անգլիա երբեք ալ պատերազմի պիտի չմտնէ Տանցիկի համար:

*** Հիթլէրի անմիջական գործակիցներէն Հէր Հէս ճառ մը խօսեցաւ Զիքֆրիտի բանուորներուն եւ յարձակեցաւ Անգլիոյ վրայ, ըսելով — «Արտասահմանի մէջ ջանք կը թափուի համոզելու գերման ժողովուրդը, թէ դուրսը ոչ ոք թշնամի է Գերմանիոյ, այլ հակառակութիւնը ուղղուած է գեր-ման կառավարութեան եւ ղեկավարներուն դէմ: Ասոնք ճիշդ այն խօսքերն են, որոնք գործածուեցան 1918ին: Այս ողոքիչ ու կեղծ խօսքերուն արձագանգը տակաւին մեր ականջներուն մէջ է: Հին անգլիական յանկերգն է, նոր սրինգ-ներու վրայ երգուած: Բայց մենք չենք խաբուիր»:

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊԵՐԼԻՆԷՆ կը հերքեն այն լուրը թէ Անգարայի դեսպանը, Ֆոն Փափէն, Մոսկուա պիտի երթայ մասնաւոր պաշտօնով:— Հիթլէր Պերլին վերադար-ձաւ, ընդունելու համար Պուլկարիոյ վարչապետը: Հունգարիոյ սպայակոյ-տին նախագահն ալ Պերլին գնաց երէկ:

ԵԳԻՊՏՈՍԻ կառավարութիւնը խորհրդակցութիւններ կը կատարէ Սուէզի ընկերութեան հետ, ջրանցքին պաշտպանութեան միջոցները զօրացնելու հա-մար:

ՄՈՆԿՈԼԻՈՅ եւ Մանչուրիոյ սահմանին վրայ օդանաւային կռիւները կը շարունակուին անընդհատ: Վերջին լուրերու համաձայն, Ճափոնցիները յա-ջողած են ետ մղել 3000 խորհրդային – մոնկոլ զինուորներ, 30 հրասայլերով: Ճափոնական զեկոյցը կ'ըսէ թէ խորհրդային եւ մոնկոլ զինուորները Ման-չուրիա մտեր էին շաբաթ օր, բայց առտուն ճափոնական զօրքը յաջողեցաւ վանել զանոնք: Ցարձակողականը կը շարունակուի:

ՄԷԿՈՒԿԷՍ ՄԻԼԻՈՆ ՖՐԱՆՔԻ նուէր մը յանձնուեցաւ ազգ. պաշտպանու-թեան համար, հարուստի մը կողմէ որ կ'ուզէ գաղտնի պահել իր անունը:

ՀՆԴԿԱՉԻՆԻ մէջ կատարուած քննութեան մը համաձայն, ֆրանսական այդ գաղթավայրը կրնայ 100,000 զինուոր հանել, զօրաշարժէն մէկ ամիս վերջը:

ԿՐԹԱԿԱՆ ՆԱԽԱՐԱՐ Պ. Զէյ բացումը կատարեց Պալզաքի արձանին, որ շինուած է 41 տարի առաջ: Արձանագործը մեռած է 22 տարի առաջ:

ԱՐՀԵՍՏԱԿՑԱԿԱՆ միութիւններու դաշնակցութեան խորհրդաժողովը բացուեցաւ Ցիւրիխի մէջ: Կը մասնակցին 27 երկիրներու 20 միլիոն կազմա-կերպուած աշխատաւորներու 150 պատգամաւորները: Աչքի զարնող դէմքերէն կը մասնակցին Սըր Ուոլթըր Սիթրին եւ Լէոն Ժուհօ: Օրակարգի ամէնէն կա-րեւոր խնդիրն է՝ միջազգային այս կազմակերպութեան մէջ առնել ռուսական կազմակերպութիւնը եւս:

ՍԻԱՄԸ յուլիս 1էն սկսեալ կը կոչուի «Թայլէնտ» (ազատ մարդոց երկիր), իսկ Սիամցիները պիտի կոչուին «Թայ» (ազատ):

ՍԱՇԱ ԿԻԹՐԻ, հեղինակ եւ դերասան, որ չորրորդ անգամ կ'ամուսնա-նայ, առջի օր ստորագրեց ամուսնութեան թուղթերը, բայց քաղաքային պաշ-կին առեն ոչ ինք երեւցաւ, ոչ ալ հարսնցուն: Այսօր 150 հիւրեր հրաւիրուած են կրօնական պսակին առթիւ:

ԳԵՐՄԱՆԱԿԱՆ կառավարութիւնը արգիլեց օտարալեզու երգերը: Շատ մը պարեր ալ «այլասերած» կը համարուին, ուստի անհրաժեշտ է նախապէս ար-տօնութիւն ստանալ:

ՄՈՍԿՈՒԱՅԷՆ հասած լուրերու համաձայն, վերջերս ձերբակալուած է հռչակաւոր բեմադրիչը, Վզէլոլոդ Մէյէրհօլտ, որ անցեալ տարի քշուած էր իր իսկ հիմնած թատրոնին վարչութենէն, իբրեւ «ձեւապաշտ»:

ԵՐՈՒՍԱՂԷՄԷՆ կը հեռագրեն թէ ռումբ մը պայթեցաւ Հայֆայի մէկ սրճարանին մէջ: Երեք Արաբներ մեռան, քսան անցորդներ ալ վիրաւորուե-ցան, արաբ թէ հրեայ:

ՄՈՒՍՈԼԻՆԻ հրամանագրով մը արգիլեց երկաթի գործածութիւնը՝ տու-ներու եւ պարտէզներու ցանկապատերուն համար:






























Le Gerant : H. STEPHAN

Imprimerie A-DER (AGOPIAN) 17, Rue Damesme .. Paris (13)

չէ մոռցած Ալպանիան եւ կ'երազէ եօ առնել այն հողերը զոր կորսնցուց պալ– քանեան պատերազմներուն մէջ: Հետեւաբար Պուլկարիոյ եւ Եուկոսլավիոյ շահը կը պահանջէ յարել Առանցքին, հեռանալով ժողովրդավար պետութիւն– ներէն, որպէսզի զոհ չերթան Թրքական ախորժակին, որ լայն բացուած է, շնորհիւ Սանճաքի կցումին...

*** Պուլկարիոյ երեսփ. ժողովին նախագահը Լոնտոն եւ Փարիզ պիտի այցելէ, խորհրդակցելու համար: Միւս կողմէ 36 պուլկար երեսփոխաններ Մոսկուա պիտի երթան յուլիսի վերջերը, խորհրդային կառավարութեան հրաւէրով, նախագահութեամբ երեսփ. ժողովի փոխ – նախագահին: Այս հրաւէրը եղաւ ճիշդ այն օրը երբ Պուլկարիոյ վարչապետը Պերլին կը հասնէր:

## Կատաղի կռիւներ Մանճուրիոյ մէջ

Մոսկուայէն կը հեռագրեն թէ ճափոնական զօրքը ջախջախիչ պարտու – թիւն մը կրեց Մոնկոլիա – Մանչուրիա սահմանին վրայ, վերջին չորս օրերու ընթացքին: Այդ լուրերուն համաձայն, 800 ճափոնցիներ եւ Մանչուներ սպաննուած, 50 հրասայլեր եւ ութ թնդանօթներ անգործածելի դարձած, 43 ճափոնական օդանաւեր վար առնուած են. իսկ խորհրդային – մոնկոլեան զօրքին կորուստը եղած է հարիւր մեռեալ, 200 վիրաւոր, 25 հրասայլեր եւ զրահապատ կառքեր անգործածելի դարձած: Կռիւը սկսած է երկուշաբթի առտու կանուխ եւ կը շարունակուի մինչեւ այսօր: Իսկ ճափոնցիները կը հաղորդեն թէ գործողութիւնները յառաջ կը տարուին յաջողութեամբ եւ թէ բազմաթիւ խորհրդային հրասայլեր եւ օդանաւեր փճացած են:

*** Ճափոնի կայսրը եւ կայսրուհին ազգ. ծոմապահութիւն կատարեցին երէկ, չինական պատերազմի տարեդարձին առթիւ, օրինակ հանդիսանալու համար նոր զոհողութեանց: Առտուն աղօթեցին, յետոյ բրինձով ապուր մը կերան: Ոչ ծխել, ոչ խմել, ոչ ալ որ եւ է զուարճութիւն:

*** Ճափոնի վարչապետը յայտարարեց թէ պատրաստ են յարգելու միւս պետութեանց շահերը, բայց անկարելի պիտի ըլլայ գործակցիլ անոնց հետ, եթէ մերժեն ճանչնալ Ճափոնի գրաւած դիրքը Չինաստանի մէջ:

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԻՏԱԼԻՈՅ արտաքին նախարարը Կոմս Չիանօ, 62 հետեւորդներով Սպանիա պիտի երթայ այսօր, շաբաթ եւ յուլիս 12ին պիտի այցելէ զոր. Ֆրանքոյի: Իտալական մամուլը մեծ կարեւորութիւն կուտայ այս ճամբորդութեան եւ կ'ըսէ, թէ իտալեւսպանիական նոր գործակցութեան մը հիմերը պիտի դրուին: Կ'ըսուի թէ Սպանիա Առանցքին պիտի միանայ սեպտեմբերին, երբ Զօր. Ֆրանքօ Հռոմ այցելէ:

ԳԵՐՄԱՆԻՈՅ ՀՐԵԱՆԵՐՈՒՆ արտագաղթը փութացնելու համար, «ազգային ընկերակցութիւն» մը կազմուեցաւ կառավարութեան հրամանով: Այս ընկերակցութեան անդամ պիտի ըլլան բոլոր Հրեաները: Տեսակ մը պետութիւն պետութեան մէջ: Կառավարութիւնը որ եւ է նպաստ պիտի չվճարէ: Իրենք պիտի հոգան իրենց բոլոր ծախքերը,— դպրոց, հիւանդանոց, ուտելիք, հագուստ եւն.: Այս նոր կարգադրութեան բուն միտքն է օր առաջ Գերմանիայէն հեռացնել Հրեաները, ինչպէս կը չեշտէ պաշտօնաթերթը.— «Նոր կարգադրութեամբ, այլեւս արիական բերաններուն ուտելիքը պիտի չառնուի, Հրեաները կերակրելու համար... Թող Հրեաները երթան ուրիշ տեղ փնտռեն այն ինչ որ չեն գտներ հոս: Մեր ուզածն է՝ ազատել մեր օճիքը, կարելի եղածին չափ շուտ եւ կատարելապէս»: Ընկերակցութիւնը կը գտնուի ներքին նախարարին հսկողութեան տակ:

ԻՏԱԼԱԿԱՆ ԹԻՐՈԼԻ Գերմաններուն տեղափոխութեան համար համաձայնութիւն գոյացաւ Գերմանիոյ եւ Իտալիոյ միջեւ: Կը կարծուի թէ 240,000 հոգի պիտի տեղափոխուին մինչեւ օգոստոս, ինչ որ կը նշանակէ վիթխարի արտագաղթ մը:

ՖՐԱՆՔԵՒԹՈՒՐՔ առեւտրական բանակցութիւնները սկսան առջի օր, առեւտրական նախարարութեան մէջ: Թուրքերը բազմանդամ պատուիրակութիւն մը ղրկած են Փարիզ: Բանակցութիւնները պիտի տեւեն մէկ շաբաթ:

52 ԱՆԳԼԻԱԿԱՆ ՕԴԱՆԱՒԵՐ պիտի մասնակցին յուլիս 14ի զօրահանդէսին, 240 սպաներով եւ զինուորներով:

ՅՈՒԼԻՍ 14Ի հակաֆաշական ցոյցին մասնակցելու հրաւէր ուղղած էր համայնավար կուսակցութիւնը, բայց ընկերվարականները մերժեցին: Այս մերժումին վրայ, համայնավար կեդր. կոմիտէն բանաձեւ մը քուէարկեց, որով ընկերվարականները կը մեղադրէ իբրեւ պառակտիչ: Միեւնոյն ատեն որոշեց նոր կոչ մը ուղղել:

ՀԱՅՖԱՅԻ (Պաղեստին) մէջ մահուան դատապարտուեցան եօթը Արաբներ, որոնք զօրախումբի մը վրայ յարձակած էին:

ՏԱՐԱԳԻՐՆԵՐՈՒ ՀԱՐՑԻՆ քննութեան առթիւ, Լորտերու ժողովին մէջ գաղթային նախարարի օգնականը ըսաւ թէ Անգլիոյ մէջ հակահրէական տրամադրութիւնները կը զօրանան, եթէ հրեայ փախստականներու առջեւ երկիրը լայն բանայ իր դուռները: Անգլիական կառավարութիւնը իր կարելին ըրած է այս փախստականներուն հանդէպ: Այժմ Անգլիոյ մէջ կան 40,000 գերման Հրեաներ, որոնց 7000ը մանուկներ են: Փախստականներու բեռը պէտք չէ որ գլխաւորաբար իյնայ բրիտանական կայսրութեան ուսերուն վրայ:

ՅՈՒԼԻՍ 4Ի (Մ. Նահանգներու անկախութեան տօն) հանդիսութիւններուն առթիւ արկածներու եւ հրավառութեանց զոհ գացած են 612 հոգի:

ԿԱՐԿՈՒՏԻ ՏԵՂԱՏԱՐԱՓ մը մեծ վնասներ պատճառած է Իզմիրի Քէմալ փաշա շրջանի հունձքին, այգիներուն ու պտղաստաններուն: Սովորականէն աւելի խոշոր կարկուտ տեղացած է անընդհատ մէկ ժամ եւ աւերած 18 գիւղերու հունձքը, վնաս պատճառելով 6000 պտղամշակներու: Տեղի ունեցած են նաեւ երկրաշարժի ցնցումներ:

ԿԻՊՐՈՍԻ մէջ մէկ ամսուան համար վերցուեցաւ պաշտօնական գրաքննութիւնը:

ԳԵՐՄԱՆԻՈՅ կրթական նախարարը արգիլեց այն բոլոր գիրքերը, որոնք կը խօսին ֆրանսական օտար լեգէոնի մասին:

ԻՏԱԼԱԿԱՆ նաւարաժին մը, բաղկացած 30 մարտանաւերէ, մէկ ամիս պիտի շրջի արեւելեան Միջերկրականի մէջ:

ՓՐԱԿԱՅԻ մէջ գերման զինուորական ուժերը այնքան աւելցած են, որ քաղաքը այժմ կորսնցուցած է իր չեխական երեւոյթը եւ կը նմանի Պերլինի: Զինուորական այս կեդրոնացումը կը վերագրուի վերջերս պատահած խլրտումներու, իսկ շատեր ալ կ'ըսեն թէ «հովանաւորութիւնը» վերջացած է եւ Պերլին կը պատրաստուի պարզապէս կցել Մորավիան ու Պոհեմիան, բանալով սահմանը եւ այդ նահանգները դարձնելով Գերմանիոյ մասերը:


















Le Gerant : H. STEPHAN

Imprimerie A-DER (AGOPIAN) — 17, Rue Damesme .. Paris (13)

Հանքէուի մէջ միջադէպ մը պատահեցաւ Ֆրանսացիներու եւ Ճափոնցիներու միջեւ :

*** Ճափոնցիները Հանքէուի մէջ ձերբակալեցին Անգլիացի մը, ինչպէս նաեւ երկու անգլիական նաւերու պաշտօնեաներ : Հոնկքոնկի մէջ եւ այլուր կը շարունակուի հականգլիական պայքարը : Տեղ տեղ ամբոխային ցոյցեր կատարուած են Անգլիոյ դէմ : Շանկհայի մէջ զօրաշարժ կատարուած է : Անգլիական եւ ֆրանսական թաղամասերու յարաբերութիւնը արտաքին աշխարհին հետ գրեթէ խզուած է :

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՏԱՆՑԻԿԻ մէջ Գերմանացիները կը շարունակեն պատրաստութիւններ տեսնել, մարտական թէ քաղաքական : Խլրտումները կը շարունակուին Լեհերուն դէմ : Պ. Չէյմպըլէն իր վերջին ազդարարութիւնը պիտի ուղղէ երկուշաբթի կամ երեքշաբթի, պարզելով ամբողջ կացութիւնը : Զրոյցի մը համաձայն, Մուսոլինի բացորոշապէս հասկցուցած է թէ չարժեր պատերազմիլ Տանցիկի համար : Նոյն իսկ միջնորդութեան զրոյցներ կը շրջին :

ՎՃԱՐՈՎԻ ԱՐՁԱԿՈՒՐԴՆԵՐՈՒ մասին հրամանագիր մը հրատարակեց պաշտօնաթերթը, շաբաթ օր : Այս հրամանագրին համաձայն, այն բանուորներն ու պաշտօնեաները որ գործադուլ հռչակեցին 1938 նոյեմբեր 30ին, բայց վերահաստատուեցան 1939 յունուար 31էն առաջ, պիտի օգտուին արձակուրդէն, բայց նոյն իրաւունքէն կը զրկուին այն բանուորներն ու պաշտօնեաները որոնք 1939 յունուար 1էն ի վեր մերժած են յաւելուածական ժամեր աշխատիլ : Երկրորդ յօդուածին տրամադրութեամբ, ազգ. պաշտպանութեան հետ կապուած որ եւ է հաստատութիւն պէտք չէ դադրեցնէ աշխատանքը կամ նուազեցնէ արտադրութիւնը՝ յուլիս, օգոստոս եւ սեպտեմբեր ամիսներու ընթացքին, առանց մասնաւոր արտօնութեան : Եթէ կարելի չըլլայ ուրիշ կերպով ապահովել արտադրութեան անհրաժեշտ արդիւնքը, արձակուրդը պիտի յետաձգուի 1939 սեպտեմբեր 30էն վերջը : Եթէ յարմար դատուի բանուորներու եւ պաշտօնեաներու միայն մէկ մասին վճարովի արձակուրդ տալ, նախապատուութիւն պիտի վայելեն անոնք որ ընտանիքի տէր են : Անոնք որոնց արձակուրդը կը յետաձգուի սեպտեմբեր 30էն վերջը, մէկ – երկու օր աւելի հանգիստ պիտի վայելեն :

ԾՆՈՒՆԴՆԵՐՈՒ աճումը եւ ընտանիքներու ապագան ապահովելու համար, մասնաւոր օրէնք մը մշակուեցաւ, որուն համաձայն մասնաւոր նպաստներ պիտի սահմանուին բազմանդամ ընտանիքներու, փոխատուութիւններ պիտի ըլլան ամուսնութեան առթիւ, տուրք պիտի հաստատուի ամուրիներու վրայ եւն. : Նախարարական խորհուրդը մասնաւորապէս կը զբաղի այս կենսական հարցով :

ԱՆԳԱՐԱՅԷՆ կը հեռագրեն թէ մօտերս պիտի փոխուին Փարիզի, Հռոմի, Աթէնքի, Պերլինի, Մոսկուայի, Վարշաւայի, Թէհրանի, Թոքիոյի, Սոֆիայի, Պելկրատի, Պաղտատի եւ Պրիւքսէլի դեսպանները : Փարիզի դեսպան Սուատ Տավազ պիտի փոխադրուի Թէհրան :

ԻՏԱԼԻՈՅ արտաքին նախարարին այցելութեան առթիւ սպանիական կառավարութիւնը արտակարգ միջոցներ ձեռք առաւ : Ամբողջ սահմանագլուխը հսկողութեան ենթարկուած է եւ շատ մը տուներ խուզարկուած են մայրաքաղաքին մէջ :

ՊԵՐԼԻՆԻ եգիպտական դեսպանը Փրանսերէն ծանուցագիր մը ուղղած էր գերմանական կառավարութեան, բացատրելու համար թէ արտաքին նախարարին Թուրքիա այցելութիւնը կապ չունի «այսպէս կոչուած պաշտպան քաղաքականութեան հետ» : Թարգմանութեան ատեն «այսպէս կոչուած» բացատրութիւնը մոռցուած ըլլալով, ծանուցագիրը այն տպաւորութիւնը կը գործէր թէ Եգիպտոս ալ կը հաստատէ պաշտպան քաղաքականութեան մը գոյութիւնը : Երկու ժամ վերջը ճշդուեցաւ թիւրիմացութիւնը :

1915էՆ ԱՌԱՋ ԾՆԱԾ զինուորներու արձակման մասին հարցում մը ուղղուած էր մեզի, դժբախտաբար անստորագիր : Ըստ օրէնի նշանակուած դասը պէտք է արձակուի յառաջիկայ հոկտեմբերին, բայց, ինչպէս քանիցս յիշեցուց ազգ. պաշտպանութեան նախարարութիւնը, վերջնական կարգադրութիւնը կախում ունի քաղաքական կացութենէն, որուն ենթակայ են նաեւ միւս զօրադասերը :

ՊՈԼՍՈՅ «Ճումհուրիյէթ» լրագրին աւագ խմբագիրը, Ապիտին Տավէր, որ միեւնոյն ատեն երեսփոխան է, Ֆրանսայէն Իտալիա գացած ատեն վար դրուած է իտալական ոստիկանութեան կողմէ, իր կնոջը հետ : Այս առթիւ ոստիկանութիւնը ցոյց տուած է թուրք երեսփոխանին մէկ լուսանկարը, կարմիր թուղթի վրայ փակցուած : Թուրք թերթը եւ իր գլխաւոր աշխատակիցը «խիստ ազեղ» գտնելով իտալական կառավարութեան ընթացքը, կը պահանջեն միջոցներ ձեռք առնել, փոխադարձաբար : Ինչպէս կ'երեւայ, Իտալիոյ մէջ արգիլուած է Թուրքերու մուտքը, նոյնիսկ իբրեւ «թրանզիթ» :

ՀՌՈԴՈՍԻ նաւահանգիստին մէջ հրդեհ ծագած ըլլալով, այրած է նաւ մը որուն վրայ կը գտնուէին 400 հրեայ փախստականներ՝ Աւստրիայէն եւ Գերմանիայէն : Իտալական շոգենաւ մը օգնութեան հասնելով ազատած է զանոնք :



### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Միրիճան Շիրվանեան սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց հօրեղբօր աղջկան՝

ՕՐ. ՎԱՐԴՈՒՀԻ ՇԻՐՎԱՆԵԱՆԻ

գաղտազէտ մահը որ տեղի ունեցաւ Փոն տը Շէրիւի մէջ արկածի մը հետեւանքով, 15 տարեկան ծաղիկ հասակին, անմխիթար թողլով իր ծնողքը: Շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ, գրաւոր եւ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին այս տխուր առթիւ:

Իսի լէ Մուլինօ



## ԱՄԱՎԵՐՋԻ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

Ռոմէնվիլ-Մոնթրէօյի Ֆ. Կ. Խաչի Մասնաճիւղին կողմէ 9 Յուլիս, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին, 4 Place Jeanne d'Arc, Noisy-le-Sec (Seine)

Կը նախագահէ Պ. Ս. ԱՂԱՊԱԼԵԱՆ

Ներկայացում, երգ եւ պար դպրոցականներու կողմէ: Հայկական եւ եւրոպական նուագախումբ, պար մինչեւ կէս գիշեր: Նոխ պիւֆէ, աժան գիներով

Մուտք 6 ֆր.: Առնել Autobus 95 A. եւ 21 C.



## ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՓՈՔՐ Ս'ԻԹԱԼԻԻ ՎԱՐԺԱՐԱՆԻ

9 Յուլիս, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին Յովհաննէսեանի սրահին մէջ, 13 rue Pierre Curie, Kr. Bicêtre. մէթրօ Porte d'Italie

Կը նախագահէ Պ. Հ. ՔԱՐԴԱՐԵԱՆ

Գեղարուեստական բաժին աշակերտներու կողմէ: Մուտք 3 ֆր.:



### ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ Կեդր. Վարչութեան տարեկան վիճակախաղը տեղի կ'ունենայ Յուլիս 16 ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 4ին, 8 Rue Bossuet : Շահող թիւերը պիտի հրատարակուին «Յառաջ»ի մէջ:

17 ՅՈՒԼԻՍ ԵՐԿՈՒՇԱԲԹԻ երեկոյ ժամը 7.45 — 8, Ռատիօ Մոնթրալէն պիտի նուագեն Պ. Նաճիար, (դաշնակ), Պ. Բենօ (Ջութակ եւ դափ) Պ. Աբգար (թառ եւ դափ):




Le Gerant : H. STEPHAN

Imprimerie A-DER (AGOPIAN)  17, Rue Damesme  Paris (13)

Թ) 25.000 սուր. ոսկի Պանք տը Սիրիի յանձնուած է Ֆրանսայի կողմէ, գործածուելու համար Հայոց փոխադրութեան եւ տեղաւորման ծախքերուն :

Ժ) Հայերը փոխադրուելու համար Հալէպի հայ շոֆէօրները, թիւով 26, պատրաստակամութիւն յայտնած են անմիջապէս Սանճաք մեկնելու, երբ մուտքի արտօնութիւնը տրուի :

Այս կարգադրութիւնները, որոնք հաղորդուած են Խաղ. եպ.ին, պիտի գործադրուին Ֆրանսական եւ Թրքական կառավարութեանց միջեւ այսօր վաղը կայանալիք համաձայնութիւնով մը :

Գրքղխանէն առնուած վերջին լուրերու համաձայն, գաղթողներուն համար «լէսէ – փասէ»ի դրութիւնը ջնջուած է : Ֆրանսական իշխանութիւնը առանձնած է Հայերու փոխադրութիւնը Սուրիա եւ Լիբանան կատարել իր միջոցներով : Հայ գաղթականները պիտի կրնան իրենց հետ առնել ոչ միայն իրենց շարժուն գոյքերը, այլեւ իրենց կենդանիները : Անշարժ կալուածներուն փոխարժէքին հարցը պիտի կարգադրուի ուղղակի Ֆրանսական եւ Թուրք իշխանութեանց միջեւ :

Պ. Պիւրնիէ գաղթականներու տեղաւորման գործով զբաղելու համար Հալէպ հասաւ :

Անթիլիասի կաթողիկոսարանին մէջ կազմուած Օգնութեան Կեդր. Յանձնախումբը, որուն տրամադրութեան տակ դրուած են «Յօրենի հանգանակութեան» գումարները, Սանճաքէն արտագաղթող Հայոց անմիջական կարօտութեանց յատկացուած է 500 անգլ. ոսկի, որուն 200 ոսկին ղրկուած է Հալէպ, յիշեալ Կեդր. Յանձնախումբին կողմէ նշանակուած մարմնին, եւ 200 ոսկի՝ Լաթաքիա, հոն կազմուած մարմնին : 100 ոսկի եւս Զարեհ վարդ. Փայասլեանի հետ ղրկուած է Թարթուս :

## ՏԷՐՍԻՄԻ ՋԱՊՈՒՄԸ ՊԻՏԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻ ԴԵՌ ԵՐԵՔ ՏԱՐԻ

### Բազմաթիւ աշիրէթներ կը շարունակեն կռուիլ

Գրած էինք թէ Թուրք կառավարութիւնը խորհրդարանին ներկայացուցած է օրինագիծ մը, որով երեք տարի եւս կ'երկարաձգուի Տէրսիմի բացառիկ վիճակի օրէնքը : Յուլիս 7ի իր նիստին, երբ մինչեւ սեպտեմբեր 11 արձակուրդ տրուեցաւ, խորհրդարանը ընդունած է այդ օրինագիծը : Այս առթիւ ներքին գործավար Ֆայիք Էօզդրաք խօսած է ճառ մը, որուն ամփոփումը կը քաղենք «Ճիւմհուրիյէթ»էն.—

— «Ընկերներ, Տէրսիմի շրջանը զոր Թունճէլի կը կոչենք, կը բաղկանայ հետեւեալ գաւառակներէն.— Բերդակ, Հօզաթ, Չմշկածագ, Մազկերտ, Նազմիէ, Օվաճըք, Փլիւմիւր եւ Մամըկի : Տէրսիմի դէպքերը շատ դժնդակ եւ միաժամանակ խրատական դրուագներ կը պարզեն Թուրքիոյ պատմութեան մէջ : Զգիտցող չկայ թէ ի՛նչ է Տէրսիմը, եւ թէ անոր անվերջանալի հոգերը ինչեր արժած են Թուրք ազգին » :

Թունճէլիի կարճ մէկ պատմականը ընելէ յետոյ, ըսաւ.

— « Անհրաժեշտ էր առաջին առնել երկուքը մէկ կրկնուող ըմբոստութեանց եւ դէպի շրջակաները կատարուող տեւական յարձակումներուն եւ հաւաքել զէնքերը՝ հիմնական բարենորոգումներու ձեռնարկելու համար : 1933ի ամրան կատարուած զէնքի հաւաքման փորձը չտուաւ սպասուած արդիւնքը եւ հասկցուեցաւ թէ Տէրսիմի խնդիրը վերջնապէս լուծելու համար, հարկ է շատ լուրջ քննութիւններ կատարել եւ գործի սկսելով յամառօրէն աշխատիլ մինչեւ որ վերջնական արդիւնք մը ձեռք բերուի :

Մեր այսօրուան ազգային պետը, որ այդ ժամանակ վարչապետ էր, արեւելեան նահանգներու մէջ կատարած իր ճամբորդութեան ընթացքին քննեց այս գործը եւ ճշդեց միջոցները : Այսօր կը տեսնենք այդ բարեդէպ ճամբորդութեան օգտակար արդիւնքները :

1936ին Բարձր Ժողովին կողմէ ընդունուած 2884 թուակիր օրէնքը գործադրուեցաւ մեծ ուշադրութեամբ եւ արդիւնքը անմիջապէս տեսնուեցաւ : Մեծ բարուոքում կատարուեցաւ Տէրսիմի ներքին կեանքին մէջ : Ամէն տարի շրջակայ նահանգներուն վրայ կատարուող յարձակումները դադրեցան եւ Տէրսիմի ներքին անդորրութիւնը բաւական բարւոքեցաւ : Դ. քննչութեան այս ճիշդ գործունէութիւնը խաղաղութիւն բերաւ Թունճէլիի ժողովուրդին : Կարճ ատենէն 788 զէնք յանձնուեցաւ կառավարութեան : Յանցաւորներուն շատերը անձնատուր եղան : Կառավարութեան հեղինակութիւնը ամէն կողմ հաստատելու եւ պետական օրէնքները տիրապետող դարձնելու համար, ճամբաներ եւ պահակնոցներ հիմնուեցան զանազան տեղեր եւ ձեռնարկուեցաւ զանոնք իրարու միացնելու հեռաձայնով եւ կամուրջներով :

(Շարունակութիւնը յաջորդով)

ՊՈՒԼԿԱՐԻՈՅ վարչապետը Քէօսէիվանով Փարիզ պիտի այցելէ Օգոստոսի սկիզբը երկու նպատակով,— 1. ապահովութիւն տալու անգլիական եւ Ֆրանսական կառավարութեանց թէ Պուլկարիա չէզոք պիտի մնայ պատերազմի ժամանակ, 2. խնդրելու որ Ֆրանսա եւ Անգլիա աւելցնեն իրենց գնումներուն քանակը, որպէսզի Պուլկարիա անտեսապէս նուազ կախում ունենայ Գերմանիայէն :

ՆԱՑԻ կուսակցութեան համագումարը, որ տեղի պիտի ունենայ Սեպտեմբեր 2ին, պիտի կոչուի խաղաղութեան համագումար :



### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ տիկ. Բարսեղ Փիլիկեան Տէր եւ Տիկ. Տէրտէրեան, Տէր եւ տիկ. Պաշիկեան, Տէր եւ տիկ Հօրիկեան, Տէր եւ տիկ. Մարանեան, Տէր եւ տիկ. Աւետիկեան, Տէր եւ տիկ. Աթանեան, Տէր եւ տիկ. Տօնիկեան (Ամերիկա), Տէր եւ տիկ. Գարատիքեան (Ամերիկա), Պ.Պ. Ստեփան, Անդրանիկ եւ Հմայեակ Փիլիկեաններ (Ամերիկա), Տէր եւ Տիկ. Գէորգ Փիլիկեան (Պոլիս) իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն ամէն անոնց, որոնք անձամբ, նամակով, հեռագրով եւ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց մօր, մեծ մօր, հարսին, քեռակնոջ, զոքանչին եւ սանամօր

ՏԻԿԻՆ ՈՍԿԻ ՓԻԼԻԿԵԱՆԻ

յանկարծական մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ Յուլիս 10ին իր բնակարանին մէջ, 321 rue de Lyon, Մարսէյլ:

### ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ Հայ կամաւորներու եւ մարտիկներու Միութեան ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ այսօր Շաբաթ երեկոյ ժամը 8,30ին «Խրիմեան» սրահին մէջ: Պարտաւորիչ ներկայութիւն:



Le Gerant : H. STEPHAN

Imprimerie A-DER (AGOPIAN) 17, Rue Damesme .. Paris (13)

## Թրքական գործակալները շարժման մէջ

Նկատելով որ խուճապային գաղթ մը կրնայ արատ բերել իրենց, Թուրքերը ամէն միջոցով կ'աշխատին տարածել այն լուրը թէ Քրիստոնեաները շատ գոհ են իրենցմէ եւ բնաւ դիտաւորութիւն չունին մեկնելու: Մանաւանդ որ Սուրիան «խառնակ» է եղեր եւ անիշխանական:

Մասնաւոր գործակալներ կ'աշխատին հաստատամութեան յայտարարութիւններ կորզել Քրիստոնեաներէն եւ մանաւանդ Հայերէն: Նպատակն է անցընել Յուլիս 22էն յետոյ ծագելիք ցնցող տագնապը: Անկէ վերջ իրենք պիտի փարեն մնալ ուզող միամիտները:

## ՏԷՐՍԻՄ ՉԷ ԶԱՊՈՒԱԾ ՏԱԿԱՒԻՆ

Թուրքիոյ ներքին գործավարը, խոստովանելէ վերջ թէ Տէրսիմի զսպումը չէ յաջողած ակիզբները, հակառակ զինուորական գործողութեանց մասին տրուած տեղեկագրերուն, կ'ըսէ թէ Քիւրտերը անցեալ եւ նախանցեալ տարիներուն ևս փորձած են խորտակել Թրքական ճակատը:

Զսպումի նոր շարժում մը 1937ին.— «Այսպէս, ադաները եւ աէյխները ուզեցին փորձ մըն ալ կատարել, որովհետեւ կառավարութեան այս լուրջ ու հիմնական միջոցները կը հասկցնէին թէ վերջ գտած է իրենց բռնութեան շրջանը, առանց աշխատելու՝ ժողովուրդի կռնակէն ապրելու եւ ժողովուրդը իբրեւ գերի գործածելու դրութիւնը: Այդ խմբակը տոիթ դարձուց անտառներու օրէնքը, բնակչութիւնը գրգռելու համար:

Արդարեւ, այդ խառնակչական քարոզութիւնը յաջողեցաւ: 1937 Մարտին, Եուսուֆան եւ Տէնման աշիրէթները քանդեցին կամուրջները եւ հեռաձայնները եւ գործի անցան: Անոնց միացան նաեւ Հայտարան եւ Ապպաս Ուշաղը աշիրէթները, վերջինին պետն էր Սէյիտ Րիզան:

1937 Դեկտեմբեր 31ին, յարձակումի ենթարկուեցան Գալան շրջանի Մանասուր Ուչաղը գիւղի մեր ոստիկան — զինուորները եւ Տիզտաշ գիւղի պահակները: Ասոր վրայ, 1938ին վերջնական զսպումի գործողութեան մը ձեռնարկուեցաւ, մասնակցութեամբ նաեւ Գ. բանակի զօրամասերուն: Քոչ եւ Գալան շրջանները արգիլեալ գօտի հռչակուեցան եւ բնակիչները արեւմուտք փոխադրուեցան: Ըմբոստութեան մէջ ծառայողները բարձրացան սեւ լեռները եւ քարանձաւներու մէջ ապաստանելով շարունակեցին դիմադրել: Կառավարութիւնը շարունակեց գործը: Ճամբաները, պահականոցները, դպրոցները, կառավարչատուները եւ զօրանոցները կանոնաւոր ծրագրով մը լրացնելու գործը շարունակուեցաւ:

Կացութիւնը այս ձեւով շարունակուեցաւ մինչեւ այս տարի: Վերջապէս, Քոչի շրջանին մէջ մնացողներուն մէկ մասը զսպուեցաւ եւ մէկ մասն ալ վերջերս անձնատուր եղաւ: Այսօր Քոչի շրջանը ամբողջովին մաքրուած է աւազակներէն:

Զսպումը պիտի շարունակուի.— Գալով Գալանի արգիլեալ շրջանին, հոն ապաստանած Եուսուֆան, Տէնման, Հայտարան, Քէօր Ապպաս, Քէղէլ եւ Եուգարը Ապպաս աշիրէթները յոյս չունին թէ այլեւս պիտի կրնան դիմադրել կառավարական ճնշումին եւ հետզհետէ անձնատուր կ'ըլլան: Վստահ եմ թէ մօտ ատենէն այդ շրջանն ալ ամբողջովին մաքրագործուած պիտի ըլլայ:

14,593 զէնք հաւաքած ենք Տէրսիմի շրջանէն, բոլոր զէնքերն ալ վերջին սիստէմով են: Շարունակելով զսպումը Թունճէլիի մէջ, միւս կողմէ կը շարունակենք շինարարութիւնը: Եթէ օրէնքին երեք տարի ալ երկարաձգումը կը խնդրենք, պատճառը այն է որ կ'ուզենք կարճ ատենէն լրացնել ձեռք բերուած արդիւնքը, այսինքն Տէրսիմի մէջ հաստատել ոչ թէ անցաւոր, այլ տեւական ու բնաւ չխանգարուելիք անդորրութիւն մը, ինչպէս նաեւ այնքան լայնցնել ու արմատացնել շինարարական ու քաղաքակրթական գործը, որ այլեւս ոչ ոք հնարաւորութիւն ունենայ չեղելու ճամբէն: Հոն ոչ թէ անցաւոր, այլ մնայուն ու քաղաքակրթական պետական կազմակերպութիւն մը ստեղծելու տեսակէտով՝ պէտք է շարունակել Թունճէլիի օրէնքը, մինչեւ որ ձեռք բերուած արդիւնքը ամբողջական դառնայ:

Հանրապետական վարչութիւնը չէր կրնար թոյլատրել որ Թրքական հողին մէկ կտորը մնայ իբր բոյն անհնազանդութեան եւ աւազակութեան: Ամէն միջոցի դիմեցինք, ճիշդ Անգարայի, Այտընի նման ապահովութեան եւ հանդարտութեան արժանացնելու համար Տէրսիմը: Մեր նշանաբանն է կչռելով գործադրել միջոցները, խստութեան դիմել միայն այն ատեն՝ երբ այդպէս կը պահանջեն անհրաժեշտութիւնը եւ երկրին բարձրագոյն շահերը, եւ գործի սկսելէն յետոյ շարունակել մինչեւ վերջնական արդիւնքին ստացումը:

Թէեւ Թունճէլիի օրէնքը շատ զօրաւոր իրաւասութիւններ տուած է պաշտօնատարներուն, կրնամ պարծանքով յայտնել թէ այդ իրաւասութիւնները գործուած են ամենամեծ ուշադրութեամբ, չափաւորութեամբ: Համարձակ կրնամ ըսել թէ ո եւ է երկրի մէջ անկարելի էր նման դէպքերը անհետացնել ասկէ նուազ զոհողութեամբ եւ աւելի մեծ շրջահայեցութեամբ ու ճշդութեամբ»:

## Բոզվէլթ կ'ընդունի չէզոքութիւնը

Նախագահ Բոզվէլթ մամուլի ներկայացուցիչներուն հաղորդեց թէ չէզոքութեան վէճը փակուած է մինչեւ յունուար: Հետեւաբար երբեք նպատակ չունի նոր փորձ մը կատարելու, որպէսզի ծերակոյտը փոխէ իր տեսակէտը: Բոզվէլթ ապպայ ամբողջ պատասխանատուութիւնը նետելով մեկուսացման քաղաքականութեան կողմնակիցներուն վրայ, մաղթեց որ քաղաքական տագնապ մը չծագի Եւրոպայի մէջ, մինչեւ Յունուար:

## Նախարար Մաքտոնալտի յայտարարութիւնները Պաղեստինի դէպքերուն մասին

Գաղթապետութեանց նախարար Մաքտոնալտ յայտարարեց խորհրդարանին մէջ, թէ բրիտանական կառավարութիւնը վճռած է իրագործել իր քաղաքականութիւնը Պաղեստինի մէջ:

Խօսելով Հրեաներու ներգաղթին վրայ դրուած արգելքին մասին, ան ըսաւ թէ ապօրէն կերպով Պաղեստին մտնողներու 40 առ հարիւրը հրեայ փախստականներ չեն, ոչ ալ Գերմանիայէն փախած Հրեաներ: «Ասիկա ապացոյց է, որ գոյութիւն ունի կազմակերպուած փորձ մը՝ բեկանելու օրէնքը Պաղեստինի մէջ եւ խանգարելու կառավարութեան վարած քաղաքականութիւնը, պարզապէս գայն անյաջողութեան մատնած ըլլալու համար»: Այս ապօրինի ներգաղթը պատճառ եղած է, որ Արաբները մտածեն թէ բրիտանական կառավարութիւնը ձեռքի տակէ կ'օգնէ Հրեաներուն եւ ինքն իսկ դէմ կ'երթայ իր քաղաքականութեան: Ասիկա կրնայ պատճառ դառնալ աղետալի ապստամբական բոցի մը, որուն հետեւանքները շատ ծանրակշիռ կրնան ըլլալ ամէնէն առաջ նոյնինքն իրենց՝ Հրեաներուն: Այս պատճառով՝ Անգլիա անվհատ եւ անյողդողդ՝ պիտի գործադրէ իր ծրագիրը, միաժամանակ անկողմնակալ վերաբերմունք ցոյց տալով թէ՛ Հրեաներուն եւ թէ՛ Արաբներուն հանդէպ:

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԹՈՒՆՈՒԶԻ մէջ ջերմաչափը ցոյց կուտայ 45 աստիճան, շուքի մէջ:

ԱՇԽԱՐՀԻ կործանումը տեղի պիտի ունենայ ... Յուլիս 27ին, ըստ Մեքսիկացի աստղագէտի մը, իբրեւ հետեւանք Հրատ մոլորակին որ պիտի բախի մեր երկրագունդին:

ԷՆԿԻԻՐԻԻ մէջ սարսափելի հրդեհ մը ծագեցաւ, վնասը կը հաշուեն 20 միլիոն:



ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Իսի լէ Մուլինոյի «Զաւարեան»ի ընկերները իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն ընկ. Երուանդ Ատանալեանի եւ իր տիկնոջ, իրենց սիրասուն փոքրիկին մահուան առթիւ:

ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

Հ. եւ Գ. Գայըամեան եղբայրներ 50 ֆրանք կը նուիրեն Ֆ. Կ. Խաչի օգնութեան կայանին:

Imprimerie A-DER (AGOPIAN)

Le Gerant : H. STEPHAN

17, Rue Dameame ... Paris (13)

